Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 19, ՀՈԿՏԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Նյութեր զրույցների համար



### Առաջավորների փորձից



### Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում



### Օգնություն ագիտատորներին



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։*



---

# ԶՐՈՒՅՑ ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գ. ԳՈՒԼԱՆՅԱՆ

*Սովետական իշխանության գոյության 37 տարիների պայքարի և հաղթանակների փառապանծ ուղին ցույց է տալիս, որ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ստեղծված սովետական կարգը իրենից ներկայացնում է ազգերի իսկական իրավահավասարության և համագործակցության փառապանծ օրինակ։*

*Մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բազմազգ սոցիալիստական պետության հիմքերի հիմքն է և եղբայրական սոցիալիստական բոլոր ռեսպուբլիկաների հաջողությունների գլխավոր պայմանը։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց մարդկային հասարակության պատմության մեջ։*

*Տապալելով շահագործող դասակարգերի*





տիրապետությունը, նա փշրեց ազգային շահագործման բոլոր կապանքները և անսահման հնարավորություններ ստեղծեց ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության համար։ Սովետական իշխանությունը 1917 թվականի նոյեմբերի 15-ին հրապարակեց «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որը ստորագրել էին Լենինը և Ստալինը։ Դեկլարացիայի մեջ հռչակված էին Սովետական իշխանության ազգային քաղաքականության կարևորագույն սկզբունքները՝ Ռուսաստանի ժողովուրդների հավասարության, սուվերենության, ժողովուրդների ազատ ինքնորոշման իրավունքի, Ռուսաստանի տերիտորիայի վրա բնակվող ազգային փոքրամասնությունների ազատ զարգացման մասին և այլն։

Պատմությանը հայտնի են այնպիսի բազմազգ պետություններ, ինչպես՝ միապետական Ավստրո-Հունգարիան, սուլթանական Թյուրքիան, ցարական Ռուսաստանը, պանական Լեհաստանը, որոնք ազգերի միջև վարում էին թշնամական, նացիոնալիստական քաղաքականություն։ Պարզ է, որ այդպիսի բազմազգ պետությունները վտանգի ժամանակ չէին կարող ներքուստ ամուր



լինել և 1914—1918 թվականներին առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի փորձություններին չդիմանալով, քայքայվեցին։

Կոմունիստական պարտիան համարձակ կերպով ձեռնամուխ եղավ բազմազգ սոցիալիստական պետության կազմակերպմանը, որովհետև միայն աշխատավորների հավասար իրավունքներով ստեղծված բազմազգ պետությունը կդիմանար բոլոր և ամեն տեսակի փորձություններին։

«Մենք ուզում ենք ազգերի կամավոր դաշինք,— գրել է Լենինը,— այնպիսի դաշինք, որը թույլ չտար մեկ ազգի որևէ բռնություն մյուսի նկատմամբ,— այնպիսի դաշինք, որը հիմնված լիներ ամենալիակատար վստահության, եղբայրական միասնության պարզ գիտակցման, միանգամայն կամավոր համաձայնության վրա... Այդ պատճառով էլ անշեղորեն ձգտելով ազգերի միասնության, անողոքաբար հետապնդելով այն ամենը, ինչ անջատում է նրանց, մենք պետք է չափազանց զգույշ, համբերատար, զիջող լինենք ազգային անվստահության մնացուկների նկատմամբ»։

Սովետների Համամիութենական առաջին

համագումարը 1922 թվի դեկտեմբերի 30-ին ստեղծեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, որը գնալով աճեց ու ամրապնդվեց։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմակերպումը հանդիսացավ մեր երկրի ժողովուրդների պատմական մեծ հաղթանակը կալվածատերերի և բուրժուազիայի նկատմամբ։

ՍՍՌՄ կազմվելը լայն հնարավորություններ ստեղծեց մեր երկրի ժողովուրդների տնտեսական և կուլտուրական վերելքի, բոլոր աշխատավորների համատեղ աշխատանքի ու պայքարի համար։ Սովետական իշխանությունը լայն հնարավորություններ տվեց ամենաարագ կերպով վերացնելու ժողովուրդների տնտեսական և կուլտուրական հետամնացությունը, որը ժառանգված էր հին հասարակությունից։

Սովետական բազմազգ պետության շրջանակներում, ժողովուրդների միասնական ընտանիքում, նախկինում ճնշված ժողովուրդները ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությամբ բարձրացան առաջավոր կուլտուրայի մակարդակին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ նվաճված ժողովուրդների իրա-



վական հավասարությունից հետո, առաջին պլանի վրա քաշվեց ժողովուրդների միջև փաստական անհավասարության վերացման խնդիրը։

Մեր պարտիայի 10 և 12-րդ համագումարները գործնական մի շարք միջոցառումներ նշեցին Սովետական Միության ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու համար, մասնավորապես խնդիր դրվեց զարգացնել արդյունաբերությունը ազգային ծայրամասերում։ Կոմունիստական պարտիայի կողմից ձեռնարկված միջոցառումներն արմատապես կերպարանափոխեցին Սովետական Ռեսպուբլիկաների և մարզերի դեմքը։ Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունն ապահովեց մեր բոլոր ռեսպուբլիկաների տնտեսության ու կուլտուրայի հզոր վերելքը։

Նախապատերազմյան հնգամյակների տարիները հանդիսացան ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հզոր վերելքի տարիներ։ Ղազախական ռեսպուբլիկայում երկրորդ հնգամյակի վերջին արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը կազմեց ժողովրդական տնտեսության ամբողջ արտադրանքի 56,8 տոկոսը, մինչդեռ ցարիզմի

օրոք Ղազախստանում գրեթե ոչ մի արդյունաբերություն չկար: Կիրգիզական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան 300 անգամ:

Չտեսնված հաջողությունների է հասել Սովետական Հայաստանը: Բավական է նշել, որ ներկայումս ռեսպուբլիկայում մի քանի օրվա ընթացքում թողարկվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան թողարկվել է Հայաստանում 1913 թվականի ընթացքում: Անցյալ տարի ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1940 թվականի համեմատությամբ 3,6 անգամ ավելի շատ արտադրանք տվեց: Նույն ժամանակաշրջանում նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ կոշիկների արտադրությունն ավելացավ 3 անգամ, տրիկոտաժինը՝ 4,2 անգամ, գուլպեղենը՝ 2 անգամ, գորգեղենը՝ 3 անգամ, մահճակալներինը՝ 7 անգամ, պահածոներինը՝ 2,5 անգամ, մսինը՝ 1,6 և այլն: Մեծ հաջողությունների է հասել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Միայն ջրովի հողերի տարածությունը նախառևոլյուցիոն շրջանի համեմատությամբ ավելացել է 2,2



անգամ, իսկ ցանքերի տարածությունը՝ 6,6 անգամ, այդ թվում տեխնիկական կուլտուրաներինը՝ 21 անգամ: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հագեցված է ժամանակակից սովետական առաջավոր տեխնիկայով: Գյուղատնտեսական աշխատանքների գերակշռող մասը մեքենայացված է: Օրինակ, վարի աշխատանքը մեքենայացված է 78 տոկոսով, հացահատիկի ցանքինը՝ 50 տոկոսով, բամբակի ցանքն ու շարամիջյան մշակությունը՝ 100 տոկոսով և այլն:

Նույնպիսի բարձր տեմպերով է զարգացել ժողովրդական տնտեսությունը եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում:

Մեր երկրի ժողովուրդների բարեկամության անխորտակելի ուժը բացառիկ կերպով դրսևորվեց Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, երբ ՍՍՌՄ բոլոր ժողովուրդներն աշխատանքային ու մարտական անօրինակ սխրագործություններ կատարեցին:

Սովետական Միության բոլոր ժողովուրդները ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, Կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ մեծագույն գոտեմարտի ելան մեր Հայրենիքի սրբազան տերիտորիան ներխուժած թշնամու դեմ:

Հայրենական Մեծ պատերազմի հերոսական տարեգրությունը չափազանց հարուստ է Սովետական Միության բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի պանծալի զավակների դյուցազնական սխրագործություններով։

Գերմանական զավթիչների դեմ մղվող պայքարում մեր երկրի ժողովուրդները պաշտպանում էին ոչ միայն իրենց, այլև ամբողջ Սովետական Միության ժողովուրդների պատիվը, ազատությունն ու ազգային անկախությունը, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի նվաճումները։

Ռուս մեծ ժողովուրդը իր սխրագործություններով ոգևորում էր Սովետական Միության բոլոր ժողովուրդներին և հավատ ներշնչում հաղթանակի գործում։ Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը ոչ միայն դիմացավ պատերազմի բոլոր դժվարություններին ու փորձություններին, այլև ավելի ամրապնդվեց։ Սովետական ժողովուրդների այդ բարեկամությունն ապահովեց մեր հաղթանակը ֆաշիստական զավթիչների նկատմամբ։

Սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցությունը նոր ուժով երևան եկավ հետպատերազմյան խաղաղ-ստեղծա-



գործական աշխատանքների ժամանակաշրջանում։

Հիտլերյան ավազակները ոչնչացրել էին 1.710 քաղաք, ավելի քան 70.000 գյուղ և ավան։ Սովետական Միության ժողովուրդները չտեսնված կարճ ժամանակամիջոցում ոչ միայն բուժեցին թշնամու կողմից երկրին հասցրած ծանր վերքերը, այլև նոր խոշոր քայլ կատարեցին տնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում։

Այժմ Սովետական ժողովուրդը հսկայական ոգևորությամբ պայքարում են հինգերորդ հնգամյակի, ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հուլիսյան պլենումների պատմական որոշումները կատարելու համար։

Ռուսաստանի Մեծ Ֆեդերացիան, կոմունիստական շինարարության բնագավառում ձեռք բերած իր հաջողություններով, օրինակ է ցույց տալիս եղբայրական Միութենական Ռեսպուբլիկաներին։

Սոցիալիստական տնտեսության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում հիանալի հաջողություններ ունեն Ուկրաինան, Բելոռուսիան, Մոլդավիան, Ադրբեջանը, Վրաստանը, Հայաստանը։ Տնտեսական և կուլտուրական խոշոր վերելքի ուղիով են

ընթանում միջին ասիական և Կարելո-ֆիննական ռեսպուբլիկաները։

Աննախընթաց են Մերձբալթյան ռեսպուբլիկաների հաջողությունները։ Ծաղկում է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Մեր երկրի բոլոր հաջողությունները ձեռք են բերվել հարազատ Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ։ Ժողովուրդների բարեկամությունը մեր կյանքի բոլոր բնագավառներում հաղթանակել է և քանի կա այդ մեծ բարեկամությունը ոչ մի թշնամի մեզ համար սարսափելի չէ։ Մեր հասարակության, ժողովուրդների եղբայրական բարեկամության միասնության և հզորության մասին ընկ. Գ. Մ. Մալենկովն ասում է. «Դեռ երբեք սովետական հասարակության միասնությունը չի եղել այնքան միաձույլ, դեռ երբեք սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը չի եղել այնպես ամուր և անխախտ, ինչպես ներկայումս»։ Աշխարհի բոլոր ժողովուրդները կոմունիզմ կառուցող Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամության մեջ տեսնում են ազգային հարցի լուծման լենինյան-ստալինյան միակ ճիշտ ուղին։

---

---

# ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ՆՈՐԱՐԱՐ ՄԱԼՑԵՎԻ ՀՈՂԱՄՇԱԿՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴԻ ՄԱՍԻՆ

Գ. ԿԱՐԱԳՅՈԶՈՎ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Տեխնիկական կուլտուրաների Վարչության պետ

Հացահատիկային կուլտուրաներից բարձր բերք ստանալը միշտ եղել ու մնում է մեր պարտիայի ու Կառավարության ուշադրության կենտրոնում։ Հենց այդ հարցի վերաբերյալ էր վերջերս հրավիրված գիտության և գյուղատնտեսության պրակտիկայի աշխատողների Անդրուրալյան խորհրդակցությունը։ Խորհրդակցությունը քննության առավ «Լենինի պատգամներ» կոլտնտեսության դաշտավար, Կուրգանի մարզի Շադրինսկի փորձակայանի դիրեկտոր, Ստալինյան մրցանակի լաուրեատ Տ. Ս. Մալցևի աշխատանքի փորձը։

Կոլտնտեսային նորարար Տերենտի Սեմյոնովիչ Մալցևը իր 26 տարիների փորձով և ստացած արդյունքներով եկավ լրացնելու գյուղատնտեսական գիտության պակասը։

Նրա առաջարկած «հողի մշակման նոր մեթոդը» ներկայումս կենսագործվում է Կուրգանի մարզի շատ շրջանների կոլտնտեսություններում՝ տասնյակ հազարավոր հեկտարների վրա, որպես աշնանացան կուլտուրաների բերքատվության բարձրացման նոր և ավելի էֆեկտիվ միջոցառում։

Ինչո՞ւմն է կայանում Տ. Ս. Մալցևի առաջարկած հողի մշակման նոր մեթոդի էությունը։

Տ. Ս. Մալցևի նոր առաջարկով ժխտվում է Վ. Ռ. Վիլյամսի հողագործության խոտադաշտային սիստեմի այն տեսությունը, թե իբր միայն բազմամյա խոտերն են, որ հարստացնում են հողը օրգանական նյութերով, տալիս են հողին կնձկային կառուցվածք, իսկ միամյա բույսերը հողը զրկում են կնձիկային կառուցվածքից, որով և պակասում է հողում օրգանական նյութերի քանակը և իջնում հողի բերրիությունը։ Գիտնականներից ոմանք,— ասում է Տ. Ս. Մալցևը,— միամյա և բազմամյա խոտաբույսերի մեջ եղած հիմնական տարբերությունը բացատրում են նրանով, որ միամյա խոտերի մահացումն ու քայքայումը տեղի է ունենում ամառվա ամիսներին, հողի չոր, աերոբ



ու արագ միներալիզացիայի պայմաններում, որի հետևանքով հողի մեջ չեն ավելանում ոչ օրգանական նյութերի, ոչ էլ հումուսի պաշարները, իսկ բազմամյա խոտերը մահանում են աշնան ուշ ամիսներին, որի շնորհիվ արմատային մնացորդները քայքայվում են անաերոբ պայմաններում, ստեղծելով հողի մեջ օրգանական նյութերի ու հումուսի կուտակում։

Նման դրույթից ելնելով՝ բազմամյա խոտերը համարում են հողի բերրիությունը բարձրացնողներ, իսկ միամյա խոտերը՝ հողի բերրիությունը քայքայողներ։

Մալցևը, ընդհակառակը, գտնում է, որ միամյա բույսերի աշնանն ու գարնանը տեղի ունեցող մահացումն ու քայքայումը կատարվում է անաերոբ պայմաններում, հողին տալով կնձիկային կառուցվածք և բարձրացնելով նրա բերրիությունը։ Մալցևի այդ դրույթը, որ միամյա բույսերը որոշակի պայմաններում հողը հարստացնում են օրգանական նյութերով, ստեղծում կնձիկային կառուցվածք և էֆեկտիվ պայմաններ հողի բերրիության բարձրացման համար՝ ագրոբիոլոգիական գիտության մեջ միանգամայն նոր խոսք է և ճիշտ։

Մալցևը գտնում է, որ ինչպես միամյա, այնպես էլ բազմամյա բոլոր խոտերը ունեն մեկ ընդհանուր հատկություն— հողի մեջ թողնել ավելի շատ օրգանական նյութեր, քան թե ծախսվում է բույսերին սննդանյութ մատակարարելու համար։ Բույսերի արմատները դասավորվում են հողի ինչպես վերին, այնպես էլ ավելի խորը շերտերում, երբեմն հասնելով նույնիսկ մեկ մետրի, որը կապված է բույսի տարբեր խորությունից, տարբեր սննդանյութերով ապահովվելու հետ։

Մալցևը գտնում է, որ հողի բերրիությունը նվազեցվում և կնձիկային կառուցվածքը քայքայվում է ոչ թե միամյա բույսեր մշակելուց, այլ ամեն տարի խորը հերկելուց։

Դրանից խուսափելու համար Մալցևը խորհուրդ է տալիս հրաժարվել յուրաքանչյուր կուլտուրայի համար ամեն տարի խոր վար կատարելուց, այլ կատարել միայն մակերեսային վար։ Նա փորձով համոզում է, որ սակ խոզանի երեսվար կատարած հողերից կարելի է ավելի շատ բերք ստանալ, քան խորը հերկած հողից։ Նման պայմաններում մշակված հողի կառուցվածքն զգալիորեն բարելավվում է։

Հողի բերքատվության բարձրացման գոր-



ծում կարևոր դեր են կատարում նաև հողաշերտերում ստեղծված ջրային, օդային ու սննդառության բարենպաստ պայմանները։ Այդ նպատակով Մալցևը խորհուրդ է տալիս ստեղծել ավելի մեծ խորություն ունեցող վարելաշերտ, այսինքն վարը կատարել 40—50 սմ. և ավելի մեծ խորությամբ, նախախոփիկներ չունեցող անթև գութաններով, առանց հողը շուռ տալու, որի դեպքում հողաշերտերն անմշակ չափով իրար կխառնվեն և իրենց հիմնական մասսայով կմնան տեղում։ Այդ հնարավորություն կտա երեք-չորս տարի շարունակ, միայն խոզանի երեսվար կատարելով, ստանալ հացահատիկային բույսերի առատ բերք։

Մալցևը առանձին նշանակություն է դարձնում ցելերի մշակության վրա։ Նա աշնանը սկավառակավոր խոփիկներով կատարում է 7—8 սմ. և ավելի խորությամբ խոզանի երեսվար, վաղ գարնանը, հողի խոնավությունը պահպանելու նպատակով փոցխում է, իսկ մոլախոտերի ծիլերը երևալուց հետո սկավառակավոր խոփիկներով ոչնչացնում է ծլած մոլախոտերը։

40—50 սմ. խորությամբ հիմնական վարը կատարում է հունիս ամսում, անթև գու-

թաններով, որից հետո փոցխում է։ Ամառա-յին ամեն մի զգալի անձրևից հետո, անկախ դաշտի մոլախոտերից՝ կատարվում է թեթև փոցխում, խոնավությունը պահպանելու համար։

Օգոստոս ամսում, առաջին հերկին հակառակ ուղղությամբ, նույն խորությամբ կատարում է հերկ և դարձյալ փոցխում։ Ցելի կրկնավարը կատարում է միայն առաջին ցանքաշրջանառության ժամանակ, իսկ հաջորդ տարիներին կրկնավար չի անում։

Հաջորդ գարնանը, ձյունը հալչելուց հետո, ցելերում խոնավությունը պահպանելու նպատակով նորից փոցխում է, իսկ մոլախոտեր երևալիս կատարում է նախացանքային մշակում իր հորինած թամթիկավոր «գլոգզագ» փոցխով, որից հետո կատարում է սահմանված նորմայով ցանք նեղաշար կամ խաչաձև եղանակով։

Դաշտերի մշակումն սկսվում է բերքահավաքից հետո դաշտը փոցխելով— ասում է Մալցևը։ Ավելի լավ է գլանել օղակավոր գլաններով։ Աշնանը 7—8 սմ. խորությամբ կրկին անգամ փոցխել հակառակ ուղղությամբ սկավառակավոր գործիքով։ Նոր աճած մոլախոտերի ծիլերը ոչնչացնել



կրկին անգամ հակառակ ուղղությամբ փոցխելու միջոցով։

Կուրգանի մարզի Շադրինսկի շրջանի «Լենինի պատգամներ» կոլտնտեսությունում իր կատարած փորձերի հիման վրա Մալցևը այն եզրակացությանն է հանգում, որ ոչ բոլոր պայմաններում բազմամյա խոտերից կարելի է բարձր բերք ստանալ։

Եզրակացություն. Մալցևի առաջարկած հողի մշակման այս նոր ձևը արդյունք է Անդրուրալյան սևահող շրջաններում կատարած երկարատև փորձերի, որը դոգմատիկորեն կենսագործման ենթակա չէ բոլոր վայրերի համար, այլ խորհրդի կարգով առաջադրվում է լայն փորձարկման։

Այդ իսկ առումով Հայկական ՍՍՌ-ի տարբեր հողային պայմաններում այս տարվանից ձեռնարկվել է միայն կազմակերպչական-փորձնական աշխատանք։ ՀՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ շուտով կազմակերպվելու է տնտեսական ու գիտական նշանակություն ունեցող երկու կոլտնտեսային փորձակայան, 9 կոլտնտեսություններում ձեռնարկվել է աշնան ցորենի ցանք, որի արդյունքները սպասվում է 1955 թվականի բերքահավաքի ժամանակ։



# ՀԱՐԱՎ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՍԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ

Պ. ԴԵՄՉԵՆԿՈ, Ա. ՑԻՎԻՊՈՎ

*Հարավ-Արևելյան Ասիան երկրագնդի ընդարձակ տարածություններից մեկն է։ Նա իր մեջ միավորում է Ինդոնեզիան, Բիրման, Վյետնամը, Լաոսը (Պատետ-լաո), Կամբոջան (Կխմեր), Տայլանդը, Մալայը։ Այդ երկրների ընդհանուր տարածությունը կազմում է ավելի քան 4,5 միլիոն քառակուսի կիլոմետր, որը համարյա 20 անգամ գերազանցում է Անգլիայի տերիտորիային։ Ազգաբնակչության թիվը այդ շրջանում հասնում է 180 միլիոն մարդու, երեք անգամ ավելի, քան Անգլիայում։*

*Հարավ-Արևելյան Ասիայի երկրները ընկած են տրոպիկական և հասարակածային գոտում, Հնդկական ու Խաղաղ օվկիանոսների միացման կետում։ Նրանք վաղուց հռչակված են իրենց հսկայական ու բազմատեսակ բնական հարստություններով։ Այդ հարստությունները իրոք մեծ են։ Ներ-*



*կայումս այդ երկրներին բաժին է ընկնում ողջ կապիտալիստական աշխարհի կաուչուկի ստացման 90 տոկոսը, անագի՝ 70 տոկոսը, այստեղ է արտադրվում բրնձի 40 տոկոսը, արդյունահանվում են նավթ, ադամանդներ, փայլար, բացառիկ մետաղներ և ուրիշ շատ օգտակար հանածոներ։*

*Վաղ ժամանակներից սկսած Հարավ-Արևելյան Ասիան գրավել է արտասահմանյան գաղութարարների ուշադրությունը։ 20-րդ դարի սկզբին Հարավ-Արևելյան Ասիայի բոլոր երկրները, բացառությամբ Տայլանդի, ստրկացվել են իմպերիալիստական տերությունների կողմից։ Մալայան ու Բիրման գրավել էին անգլիական, Ինդոնեզիան՝ Հոլանդական գաղութարարները։ Հնդկաչինում (Վյետնամ, Լաոս, Կամբոջա) տնօրինում էին ֆրանսիական նվաճողները։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում այդ բոլոր երկրները օկուպացվեցին Յապոնիայի կողմից։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո երկրագնդի այդ շրջանում իրադրությունը խիստ փոխվեց։ Հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական Յապոնիայի պարտությունը, չինական ժողովրդի մեծ*

հաղթանակը, որը խորտակեց ֆեոդալների և ամերիկյան իմպերիալիստների իշխանությունը, նպաստեցին ասիական երկրներում ազգային-ազատագրական շարժման ուժեղացմանը։

Վյետնամի ժողովուրդը դուրս վռնդեց յապոնական զավթիչներին և 1945 թվականի սեպտեմբերին հռչակեց իր երկրի անկախությունը։ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ծնունդը խոշորագույն իրադարձություն հանդիսացավ Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդների կյանքում։ Բայց ամերիկյան մոնոպոլիստների կողմից պաշտպանվող ֆրանսիական գաղութարարները երիտասարդ ռեսպուբլիկայի վզին փաթաթեցին գաղութային պատերազմ։ Վյետնամի ժողովուրդը Լաոսի և Կամբոջայի եղբայրական ժողովուրդների հետ միասին մոտ 9 տարի զինված պաշտպանում էր հայրենիքի ազատությունն ու անկախությունը ամերիկա-ֆրանսիական զավթիչներից։

Մի շարք լուրջ պարտություններ կրելով Վյետնամի ժողովրդի դեմ մղած պատերազմում, Ֆրանսիայի կառավարող շրջանները, Հնդկաչինի խաղաղության համար երկրում աճող շարժման ճնշման տակ, ստիպված



եղան համաձայնվել պատերազմական գործողություններին վերջ տալուն։ Ժնևյան խորհրդակցությունում Ֆրանսիան ճանաչեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Լաոսի, Կամբոջայի անկախությունը և պարտավորվեց այդ երկրներից դուրս բերել իր զորքերը։ Դա հանդիսացավ խաղաղության ուժերի խոշոր հաղթանակը ոչ միայն Ասիայում, այլև ամբողջ աշխարհում։

Դեն նետելով հոլանդական իմպերիալիզմի լուծը՝ անկախություն ձեռք բերեց և Ինդոնեզիայի ժողովուրդը։ Երկրում ստեղծվեց բուրժուական ռեսպուբլիկա։

Հակառակ խաղաղության թշնամիների մեքենայություններին, Ինդոնեզիան դիվանագիտական հարաբերություններ է հաստատել Սովետական Միության ու Չինական Ժողովրդական Կառավարության հետ։ Ընդլայնվում և ամրանում են նրա տնտեսական ու կուլտուրական կապերը դեմոկրատական լագերի երկրների հետ։ Ներկայումս Ինդոնեզիայի ժողովուրդը պայքար է մղում Հոլանդիայի տնտեսական ու քաղաքական կախվածությունից լրիվին ազատագրվելու համար, ինչպես նաև երկրում ամերիկյան կապիտալի ուժեղացող ներթափանցման դեմ։

1948 թվականին անգլիական կառավարու-

թյունը ստիպված եղավ անկախություն տալ Բիրմային։ Դաժան տեռորի և ուժից վեր գաղութային ճնշման պայմաններում իր իսկական անկախության ու դեմոկրատական իրավունքների համար խիզախորեն պայքարում է Տայլանդի ժողովուրդը։

Այսպիսով, գաղութային տերությունների դիրքերը Հարավ-Արևելյան Ասիայում հետպատերազմյան ժամանակաշրջանում նշանակալի չափով խարխլվել են։

Այդ բոլորը հանգեցրեց իմպերիալիստական, գլխավորապես անգլո-ամերիկյան հակասությունների սրմանը Հարավ-Արևելյան Ասիայի երկրներում։ Միացյալ Նահանգները ուժեղացրել են իրենց ներթափանցումը անգլիական տիրակալության տակ գտնվող երկրները։ ԱՄՆ-ը Հարավ-Արևելյան Ասիայի շրջանում պահում է անգլիական նավատորմին ու ավիացիային գերազանցող ավելի շատ ռազմա-ծովային և օդային ուժեր։

Հարավ-Արևելյան Ասիան ոչ միայն առասպելական շահույթների և դեֆիցիտային հումքի աղբյուր է հանդիսանում ԱՄՆ-ի իմպերիալիստների համար, այլև ժողովրդական Չինաստանի սահմաններին մոտիկ ստրատեգիական կարևոր պլացդարմ։ Ամե-



րիկյան իմպերիալիստները ձգտում են այստեղ ստեղծել ռազմական խմբավորումներ՝ այդ երկրները ամերիկյան կապիտալին ենթարկելու համար։

Միացյալ Նահանգների ցուցումով սեպտեմբերի 6-ին Ֆիլիպինների մայրաքաղաք Մանիլայում հրավիրվեց կոնֆերանս, որին մասնակցեցին 8 երկրների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Պակիստանի, Ավստրալիայի, Նոր Զելանդիայի, Տայլանդի և Ֆիլիպինների ներկայացուցիչները։

ԱՄՆ-ի ճնշմամբ կոնֆերանսում ստորագրվեց այսպես կոչված «պայմանագիր Հարավ-Արևելյան Ասիայի կոլեկտիվ պաշտպանության մասին», որը իրականում հանդիսանում է ռազմական դաշինք։ Չնայած ամերիկյան պրոպագանդան ազդարարում է Վաշինգտոնի կողմից ստեղծված բլոկի «պաշտպանական» բնույթի մասին, սակայն նրա ագրեսիվ էությունը բացահայտ է։

Այդ բլոկի բուն նպատակը, կամ ինչպես անվանում է նրան արտասահմանյան մամուլը՝ ՍԵԱՏՕ («Հարավ-Արևելյան Ասիայի համար պայմանագրի կազմակերպում»), հանգում է Ասիայի խաղաղության, ազատության և ազգային անկախության համար պայքարող պրոգրեսիվ ուժերի ճնշմանը։

Բլոկն իր սուր ծայրով ուղղված է Հեռավոր Արևելքի ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ, ասիական երկրներում աճող ազգային-ազատագրական շարժումների դեմ։ Այսպիսով ՍԵԱՏՈ-ի ստեղծումը հանդիսանում է միջազգային լարվածությունը սրելու, Ասիայի ժողովուրդների անվտանգությանն ու խաղաղությանը սպառնացող գործոն։

Հենց այդ պատճառով էլ իրենց ազատությունն ու անկախությունը հարգող ասիական պետությունները հրաժարվեցին մասնակցել Մանիլայի կոնֆերանսին։ Ո՛չ Ինդոնեզիան, ո՛չ Բիրման, ո՛չ էլ Ասիայի այնպիսի մի մեծ երկիր, ինչպիսին Հնդկաստանն է, չընդունեցին կոնֆերանսին մասնակցելու ամերիկյան հրավերը։

Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդներին խորթ են իմպերիալիստների ագրեսիվ պլանները։ Ագրեսորների մեքենայություններին նրանք պատասխանում են խաղաղության, անվտանգության ու իսկական ազգային անկախության համար պայքարի ուժեղացմամբ։

---



# ԲԱՐՁՐ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

### Ցուցահանդեսի մասնակից, Լոռվա Տոհմաքուծական սովխոզի բրիգադիր Ս. ՍԱՐԳՍՅԱՆԻ պատմածը

*Անասնաբուծության զարգացման բնագավառում ձեռք բերած լավագույն արդյունքների համար մեր սովխոզի 75 աշխատողներ այս տարի իրավունք նվաճեցին մասնակցելու Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին, իսկ սովխոզը արժանացավ լայն ցուցադրման։*

*Ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաների պավիլիոնները, այնպես էլ մեր Հայկական պավիլիոնը ամեն օր լեփ-լեցուն էր բազմաթիվ այցելուներով։ Նրանք մեծ հետաքրքրություն էին ցուցաբերում դեպի մեր սովխոզի հաջողությունները։*

*Թե ինչպիսի դժվարություններ հաղթահարելուց ու առաջավոր մեթոդներ գործադրելուց հետո մենք հասանք հաջողությունների,*

այդ մասին ես կուզեի մի քանի խոսք ասել։

Ամենից առաջ անասնաբուծության զարգացման հիմքը կերի կայուն բազա ստեղծելն է։ Առանց հյութալի ու առատ կերի, ավելորդ է խոսել անասունների ցեղը ազնվացնելու, նրանց կաթնատվությունը բարձրացնելու և այլ հարցերի մասին։ Հաշվի առնելով այդ հանգամանքը, մենք յուրաքանչյուր կովի համար (բացի ամառային արոտից) ամեն տարի ապահովում ենք երկու և կես տոննա չոր խոտ, մեկ տոննայից ավելի խտացրած կեր (քուսպ, թեփ, աղացած վարսակ և այլն), 6—7 տոննա հյութալի կեր (սիլոս, ճակնդեղ, կարտոֆիլ, կաղամբ, բանջարաբոստանային այլ կուլտուրաներ), հանքային կերերից՝ աղ և կավիճ։ Յուրաքանչյուր կովի համար նախատեսված այդ կերաբաժինը (ռացիոնը) նպաստում է կաթնատվության բարձրացմանը։ Անասուններին գեր և առողջ պահելու համար ձմեռային տաք եղանակներին օրական մեկից-երկու ժամ դուրս ենք բերում զբոսանքի, հաճախակի օդափոխության ենթարկում գոմերն ու հորթանոցները։

Մսուրային շրջանում անասունների սանի-



տարական վիճակը էլ ավելի բարելավելու նպատակով սահմանում ենք ամենօրյա հերթապահություն ու հսկողություն։ Ծնի ընթացքում մատղաշներին անմիջապես անջատում ենք մորից ու առանձնացնում նախօրոք պատրաստված վանդակներում՝ կազմակերպելով հատուկ խնամք։ Վաղ հասակից հորթերին տալիս ենք չոր և խտացրած կեր։ Հորթերի օրգանիզմը ամրապնդելու նպատակով նրանց տեղավորում ենք չտաքացվող շենքերում։ Հոգատար խնամքն ու լավ կերակրումը, անշուշտ, նպաստում են նրանց արագ աճին և քաշի ավելացմանը։ Դրանով է բացատրըվում այն հանգամանքը, որ մեզ մոտ գնալով նվազում է մատղաշների կորուստը։ Բերենք մի քանի օրինակ. 1952 թվականին 516 հորթից ունեցել ենք 11 կորուստ, 1953 թվականին 458-ից՝ 9, իսկ այս տարվա 360-ից՝ 2։ Մատղաշների օրական միջին քաշը ավելացել է 800 գրամով։

Աշխատանքի հիմքում ունենալով անասնաբուծության զարգացման մասին մեր պարտիայի ու կառավարության վերջին որոշումները, մենք ավելի մեծ աշխատանք ենք տանում անասունների ցեղայնության ազնվացման և գլխաքանակի ավելացման ուղղությամբ։ Այդ բանում մենք արդեն հասել ենք

բավարար արդյունքների։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին ու սովխոզներին օժանդակելու նպատակով միայն անցյալ տարի նրանց տվել ենք 300 գլուխ ցեղական անասուններ։

Անասունների խնամքը լավ կազմակերպելու շնորհիվ, անցած տարիների համեմատությամբ 100 կիլոգրամով ավելացրել ենք կովերի միջին քաշը։ Մեր խնամած ամեն մի կով ներկայումս կշռում է 500 կիլոգրամից ավելի։ Զգալի չափով իջել է կաթնամթերքների ինքնարժեքը և տնտեսության արտապլանային տարեկան օգուտը հասել է 400—500 հազար ռուբլու։ Այդ նույն ժամանակամիջոցում բարձրացել է ֆուրաժային կովի կաթնատվությունը։ 1953 թվականին նախատեսված 3400 լիտրի դիմաց մենք յուրաքանչյուր կովից ստացել ենք 3685 լիտր կաթ, իսկ առանձին կթվորուհիներ՝ դրանից էլ ավելի։ Այսպես, օրինակ, կթվորուհի Գ. Նովրուզովան իր խնամած 11 կովերից յուրաքանչյուրից ստացավ 4,939 լիտր կաթ, Շ. Մխիթարյանը, Ա. Մուրադյանը, Ա. Տոնոյանը, Մ. Միխայիլովան և ուրիշներ՝ 4000 մինչև 4804 լիտր կաթ, իսկ անվանի կթվորուհի Ա. Հովհաննիսյանը՝ 5065 լիտր։ Նա խոստացել է այս տարի իր խնամած կովերի կաթնատվու-



թյունը հասցնել մինչև 5300 լիտրի։ Նրա հետ մրցող մյուս կթվորուհիները պարտավորվել են կաթի տարեկան պլանը գերակատարել 300 լիտրով։

Վերջին տարիների ընթացքում մեծ աշխատանք է տարվել անասնապահական շենքերի շինարարության և աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Միայն անցած երկու տարում կառուցվել է 8 նոր անասնաշենք՝ կովանոցներ, հորթանոցներ, ծնարաններ, մեկուսարան և այլն։ Բոլոր գոմերում անց է կացված էլեկտրական լուսավորություն, 7 գոմում՝ կախովի ճանապարհներ՝ կերերը և աղբը տեղափոխելու համար, սարքված են ինքնաջրման հարմարանքներ, հաջողությամբ գործում են մեքենայական կթի ապարատները։

Առանձնահատուկ ուշադրություն է դարձվել անասնապահական կադրերի որակի բարձրացման և ամրապնդման վրա։ Մեզ մոտ աշխատողների գերակշռող մասն ունի 10—16 տարվա աշխատանքի փորձ և շատերը պարգևատրված են կառավարական շքանշաններով ու մեդալներով։

Մենք չենք հանգստանում ձեռք բերած հաջողություններով։ Մենք մեր գիտելիքների պակասը լրացնում ենք ամեն օր գիտա-պրո-

պուլյար գրքեր, թերթեր ու ամսագրեր ընթերցելով, կարճատև կուրսեր հաճախելով, փորձի փոխանակում կազմակերպելով ու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները լավագույն ձևով կատարելով։

Սակայն այդ բոլորը դեռ քիչ են ավելի բարձր մթերատվության հասնելու համար։ Մոսկվայում եղած ժամանակ՝ ծանոթանալով ցուցահանդեսում ներկայացված անասնապահական առաջավոր կոլտնտեսությունների ու ֆերմաների փորձին, մենք համոզվեցինք, որ մեր ցուցանիշները նրանց համեմատ դեռ բավականին ցածր են։ Մենք շատ նորություններ իմացանք կաթի յուղայնության բարձրացման, հանքային կերանյութի օգտագործման, ֆերմայում աշխատանքը ճիշտ կազմակերպելու և այլ հարցերի մասին։

Օգտագործելով այդ առաջավոր կոլտնտեսությունների և գյուղատնտեսության առաջավորների հարուստ փորձը, մեր սովխոզի յուրաքանչյուր աշխատողի պատվի գործը պետք է լինի՝ պայքարել մթերատվության բարձրացման համար, որպեսզի կրկին իրավունք նվաճենք եկող տարի մասնակցելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։

---

# ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Ն. ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆ
Ս. Մ. Կիրովի անվան գործարանի
արտադրության պետ

Իջեցնել արտադրանքի ինքնարժեքը՝ դա նշանակում է ավելացնել սոցիալիստական կուտակումները, հնարավորություններ ընձեռել ավելի շատ կապիտալ ներդրումների համար, հարստացնել մեր ժողովրդական տնտեսությունը, բարձրացնել աշխատավորների ռեալ աշխատավարձը, բարելավել աշխատավորների նյութական և կուլտուրական բարեկեցությունը։

Որո՞նք են այն աղբյուրները, որ նպաստում են արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջին պայմանը դա արտադրական պլանների կատարումն ու գերակատարումն է։ Օրինակ այս տարվա մայիս ամսին մեր գործարանը իր պլանը կատարեց 104,1 տոկոսով, որի հետևանքով արտադրանքի միա-

վորի ինքնարժեքը այդ ժամանակամիջոցում իջեցվեց 6,9 տոկոսով։ Իսկ հուլիս ամսին գործարանը իր պլանը կատարեց միայն 80,2 տոկոսով, որի պատճառով արտադրանքի միավորի ինքնարժեքը բարձրացավ 10,7 տոկոսով։

Արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու երկրորդ պայմանը դա աշխատանքի արտադրողականության բարձրացումն է, այսինքն՝ մեկ աշխատողի կողմից սահմանված ժամանակում նորմայից ավելի արտադրանք տալը։

«Աշխատանքի արտադրողականությունը,— ասել է մեծ Լենինը,— դա, վերջին հաշվով, ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար»։

Առաջավոր տեխնիկայի արմատավորումը, բարդ պրոցեսների ավտոմատացումը, աշխատանքային պրոցեսների մեքենայացումը, աշխատանքային պայմանների բարելավումը, անօգուտ տեղափոխումների կրճատումը, առատ լույսը, մաքուր օդը, տեխնիկայի անվտանգությունը, սննդի և հանգստի ռացիոնալ կազմակերպումը—սրանք բոլորը նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և հետևաբար իջեցնում արտադրանքի ինքնարժեքը։



1953 թվականին գործարանում բազմագրեգատային սպասարկման, աշխատատար պրոցեսների ավտոմատացման, ծանր աշխատանքների մեքենայացման շնորհիվ մեկ բանվորի արտադրողականությունը բարձրացավ 8,9 տոկոսով։ Միայն աղի տեղափոխման մեքենայացման շնորհիվ արտադրանքի ինքնարժեքը իջավ 0,05 տոկոսով, իսկ ընդհանուր առմամբ արտադրանքի ինքնարժեքը իջավ մոտ 1 տոկոսով։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման երրորդ հիմնական պայմանը՝ դա արտադրության անընդհատ կատարելագործումն է, առաջավոր տեխնիկայի արմատավորումը, աշխատանքային պրոցեսների մեքենայացումը, գյուտարարության և նորարարության զարգացումը։

Միայն այս տարվա 8 ամսում գյուտարարության և նորարարության շնորհիվ արտադրանքի ինքնարժեքը իջել է մոտ 3 տոկոսով և գործարանը երկրին տվել է մի քանի միլիոն ռուբլու խնայողություն։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր պայմաններից է նաև վերադիր ծախսերի կրճատումը։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում գործարանի կոլեկտիվի

լավ աշխատանքը շատ հաճախ չի երևում, որովհետև շատ մեծ են գործարանային ոչ արտադրական ծախսերը։ Ոչ արտադրական ծախսերը առաջանում են այն ժամանակ, երբ արտադրանքը ժամանակին տեղ չի ուղարկվում կամ երկաթուղային տրանսպորտը պարապուրդներով է օգտագործվում։ Այդ դեպքում գործարանը վճարում է տուգանք, այսինքն կատարում է ոչ արտադրական ծախսեր։ Անցյալ տարի հոկտեմբերին մեր գործարանը չկարողացավ պայմանագրային ժամկետներում հումույթով ապահովել Լենինգրադի համապատասխան գործարանին և որպես տուգանք վճարեց հարյուր հազարավոր ռուբլիներ։ Դրա հետևանքով գործարանում արտադրանքի ինքնարժեքը բարձրացավ 1,5 տոկոսով։

Այսպիսով, թեպետև 1953 թվականի հոկտեմբերին գործարանը իր պլանը կատարեց 104 տոկոսով և հիմնական արտադրանքի ինքնարժեքը իջեցրեց 4,8 տոկոսով, բայց ավելորդ ծախսերի հետևանքով գործարանային արտադրանքի ինքնարժեքը բարձրացավ 3,4 տոկոսով։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը նպաստելու համար անհրաժեշտ է ամենուրեք



խիստ կերպով կրճատել ոչ արտադրական ծախսերը։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր պայմաններից մեկն էլ նյութերի և էներգառեսուրսների վրա կատարվող ծախսերի կրճատումն է։

Եթե արտադրանքի մեկ միավորի համար ծախսվող հիմնական և օժանդակ նյութերի, էներգիայի ծախսերի քանակը հետզհետե կրճատվում է, ապա վերջին հաշվով իջնում է նաև արտադրանքի միավորի ինքնարժեքը։ Օրինակ, մեր գործարանը միայն 1953 թվականին հիմնական հումքի տնտեսման հետևանքով արտադրանքի ինքնարժեքը իջեցրեց 0,3 տոկոսով, օժանդակ նյութերի տնտեսումից՝ 0,08 տոկոսով, էլեկտրոէներգիայի տնտեսումից՝ 0,1 տոկոսով և այլն։

Ուրեմն, որպեսզի արտադրանքի ինքնարժեքը իջնի, պետք է թույլ չտալ հիմնական և օժանդակ նյութերի, էներգառեսուրսների գերածախս։ Սիստեմատիկ կերպով պետք է տնտեսել նյութերը և էներգառեսուրսները, անշեղորեն իջեցնել նրանց ծախսման նորմաները։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը նպաստում է նաև շենքերի և սարքավորում-

ների խնամքով պահպանումը և նրանց նորոգման բարձր որակը։ Երբ շենքերը, սարքավորումները խնամքով չեն պահպանվում, կամ որակով չեն նորոգվում, ժամանակից շուտ են փչանում ավելի մեծ ծախսեր են պահանջում կապիտալ և ընթացիկ նորոգումների համար։

Շենքերի և սարքավորումների անխնամ պահպանումը և նորոգման ցածր որակը շատ հաճախ հասցնում են պարապուրդների։ Դա տեղիք է տալիս, արտադրանքի ինքնարժեքի բարձրացման։ Կապիտալ և ընթացիկ վերանորոգումների ուռճացրած ծախսերը նույնպես բարձրացնում են արտադրանքի ինքնարժեքը։

Որպեսզի իջեցվի արտադրանքի ինքնարժեքը, անհրաժեշտ է խնամքով պահպանել շենքերն ու սարքավորումները և ապահովել նրանց նորոգման բարձր որակը, ռացիոնալ օգտագործել արտադրության մնացորդները։

Արտադրության մեջ բացի հիմնական արտադրանքից, անխուսափելիորեն գոյանում են երկրորդական նյութեր և այդ մնացորդները մեծ մասամբ կարող են օգտագործվել ժողովրդական տնտեսության մեջ։

Արտադրության մեջ գոյացող երկրորդա-



կան նյութերի և մնացորդների համապատասխան մշակումից և իրացումից կուտակվում են հսկայական գումարներ, որը խիստ կերպով նպաստում է հիմնական արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Այսպես, օրինակ, մեր գործարանի 1—3 և 1—7 ցեխերում որպես մնացորդ գոյանում է մի թթու, որի համապատասխան մշակումից ստացվում է գյուղատնտեսության համար լավ պարարտանյութ։ 1—8 և 1—9 ցեխերում հսկայական քանակությամբ երկրորդային նյութեր են առաջանում, որոնց համապատասխան մշակումից ստացվում են շատ արժեքավոր հատկություն ունեցող լաքեր։ Միայն 1—8 և 1—9 ցեխերի մնացորդների իրացումից կարելի է արտադրանքի ինքնարժեքը իջեցնել ավելի քան 5 տոկոսով, իսկ 1—7 ցեխի մնացորդների իրացումից՝ մոտ 1 տոկոսով։

Այսպիսով, արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր լծակներից մեկն էլ արտադրության երկրորդային նյութերի և թափթփուկների խելացի մշակումը և նրանց իրացումն է ժողովրդական տնտեսության մեջ։

Ամփոփելով, կարելի է հանգել այն եզ-

*բակացության, որ արտադրանքի ինքնարժեքի իջեցման հիմնական ուղիները համարվում են՝ արտադրական պլանների կատարումը, արտադրողականության բարձրացումը, տեխնիկայի կատարելագործումը, աշխատանքի պայմանների բարելավումը, նյութերի և էներգառեսուրսների խնայողությունը, վերադիր ծախսերի կրճատումը, շենքերի և սարքավորումների խնամքը և որակյալ նորոգումը, արտադրական մնացորդների խելացի մշակումն ու իրացումը և այլն։*

*Իջեցնել արտադրանքի ինքնարժեքը՝ դա նշանակում է ապահովել նշված բոլոր ցուցանիշների լավագույն կատարումը, վերջ տալ անտնտեսավարությանը, անհոգությանը, արտադրության ինքնահոսին, խորապես ուսումնասիրել արտադրությունը, լայնորեն օգտագործել տնտհաշվարկը և համապատասխան հետևություններ անել արտադրությունը ամենաառաջավոր հիմունքներով կազմակերպելու համար։*

---

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

---

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Սովետական Բանակի հաղթանակը հիտլերյան զավթիչների դեմ և ԳԴՌ-ի կազմակերպումը 1949 թվականի հոկտեմբերի 7-ին, գերմանական ժողովրդին մեծ հնարավորություններ տվեց արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի արագ զարգացման համար։ Ահա այդ մասին թվեր ու փաստեր։*

✪ *Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը տարեցտարի ընթանում է անշեղ վերելքի ուղիով. դեռ 1950 թվականին արդյունաբերության արտադրանքի ծավալը հասել էր նախապատերազմյան մակարդակին, իսկ 1954 թվականի սկզբներին 1936 թվականի համեմատությամբ աճել է 177 տոկոսով։*

✪ *Հնգամյա պլանի (1951—1955) հաջող կատարման շնորհիվ 1951—53 թվականների ընթացքում ստեղծվեց մետալուրգիայի հզոր բազա, զգալիորեն բարձրացավ մեքենաշինական արդյունաբերության կարողությունը, ծանր մեքենաշինության և նավաշինության ասպարեզում ստեղծվեցին արտադրական նոր ձեռնարկություններ, հիմք դրվեց գյուղատնտեսական ժամանակակից մեքենաների արտադրությանը և գզա-*

լիորեն ավելացավ քիմիական դեֆիցիտային նյութերի արտադրությունը։ Արդյունաբերության արտադրության ծավալը 1953 թվականին, 1950 թվականի համեմատությամբ աճեց 74,8 տոկոսով, այն դեպքում, երբ հնգամյա պլանով այն պետք է աճեր 61,6 տոկոսով։

✪ Էլեկտրաէներգիայի արտադրությունը, հանքանյութերի և քարածխի հանույթը, քիմիական, մետալուրգիական, շինարարական արդյունաբերության արտադրանքը նախապատերազմյան 1936 թվականի համեմատությամբ 1950 թվականին աճեց 34,1 տոկոսով, իսկ 1953 թվականին՝ 100,3 տոկոսով։

✪ Սննդի արդյունաբերության արտադրանքի ծավալը 1936 թվականի համեմատությամբ 1953 թվականին աճեց 146,6 տոկոսով։

✪ Մեծ են հաջողությունները գյուղատնտեսության ասպարեզում։ Երկրի հողազուրկ և սակավահող գյուղացիները ստացան երեք միլիոն հեկտարից ավելի հող։ Ռեսպուբլիկայի գյուղերում կազմակերպված 5 հազար արտադրական կոոպերացիաները մշակում են հողային տարածության 13 տոկոսը։ Այս տարի հացահատիկի արտադրությունը, ձիերի, ոչխարների, խոզերի և թռչունների գլխաքանակը կհասնի հնգամյա պլանով 1955 թվականի համար նախատեսված մակարդակին։

✪ Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 605 մեքենա-տրակտորային կայաններ, որոնք սպասար-



կում են կոոպերատիվ տնտեսություններին և մենատնտես գյուղացիներին։

✪ Արդյունաբերության զարգացման, գների սիստեմատիկ իջեցման շնորհիվ բանվորների և ծառայողների աշխատավարձը 1953 թվականին 9 տոկոսով գերազանցեց պլանով 1955 թվականի համար նախատեսված չափը։ Այդ նույն ժամանակամիջոցում գյուղացիական տնտեսությունների եկամուտը աճեց ավելի քան երեք անգամ։

✪ Գների սիստեմատիկ իջեցման, թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի ավելացման, հարկերի կրճատման շնորհիվ զգալիորեն լավացել է աշխատավորության նյութական դրությունը։ Այսպես, օրինակ, միայն 1951—53 թվականների ընթացքում լայն սպառման ապրանքների գների իջեցումից բնակչությունը շահել է 7,6 միլիարդ մարկ։ Ռեսպուբլիկայում հերթականությամբ 16 անգամ անց է կացվել գների իջեցում։ Գների վերջին մեծ իջեցումը կատարվեց սեպտեմբերի 3-ին։

✪ Հնգամյա պլանով նախատեսված էր մանրածախ ապրանքների գները 1955 թվականին 1950 թվականի համեմատությամբ իջեցնել 28 տոկոսով, մինչդեռ այդ պլանը կատարվեց դեռևս 1953 թվականին։

✪ 1954 թվականի առաջին եռամսյակում ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրանքը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացավ 19 տոկոսով։

✪ Մեծ գումարներ են հատկացվում ժողովրդի կուլտուր-կենցաղային կարիքների բարելավման համար։ Միայն անցյալ տարի այդ նպատակի համար ծախսվել է 388 միլիոն մարկ։ Վերացված է գործազրկությունը, կանանց և տղամարդկանց աշխատավարձի միջև եղած տարբերությունը։ Այժմ կանայք ստանում են տղամարդուն հավասար աշխատավարձ։ 1953 թվականին ԳԴՌ-ի աշխատավորության ռեալ եկամուտն ավելացավ 2,7 միլիարդ մարկով։

✪ Լայն թափով ծավալվում է բնակարանային և կուլտուրական շինարարությունը։ Կառուցվում են բազմաթիվ նոր դպրոցներ, հիվանդանոցներ, կուլտուրայի տներ և այլն։

✪ Գերմանիայի պատմության մեջ առաջին անգամ բանվորների և չքավոր գյուղացիների երեխաները սովորելու իրավունք են ստացել։ Միայն տարրական դպրոցների թիվն ավելացել է 2 անգամ։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները բացվել են ամբողջ երիտասարդության առաջ։ ԳԴՌ-ում այժմ գործում է 31 բարձրագույն ուսումնական հաստատություն։

✪ ԳԴՌ-ի արդյունաբերության արագ զարգացմանը և ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը մեծ չափով նպաստեց Սովետական Միության կողմից ցույց տրված անշահախնդիր օգնությունը։ Սովետական Միությունը կրճատեց և ապա Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկային ամբողջովին ազատեց



պատերազմի հետևանքների հետ կապված ռեպարացիոն մատակարարումներից և մյուս ֆինանսական-տնտեսական մատակարարումներից, ինչպես նաև մինչև մինիմումի հասցրեց օկուպացիոն ծախսերը։ Բացի այդ, Սովետական Միությունը ԳԴՌ-ին տվեց 485 միլիոն ռուբլու վարկ։

✪ Անընդհատ զարգանում են ԳԴՌ-ի տնտեսական հարաբերությունները մյուս երկրների հետ։ Ռեսպուբլիկան այժմ առևտրական հարաբերություններ է հաստատել 46 երկրների հետ։ Դեմոկրատական լագերի երկրների հետ ռեսպուբլիկայի առևտրի ծավալը այժմ 1950 թվականի համեմատությամբ ավելացել է 4 անգամ։

❋❋❋

Այս է պատկերը Արևմտյան Գերմանիայում, որտեղ իշխում են խոշոր կոնցեռնները, բանկիրները, խոշոր հողատերերը և ֆաշիստական գեներալները։ Արևմտյան Գերմանիան բռնել է սպառազինման ուղին, որի համար խաբում ու կեղեքում է ժողովրդին։ Ռազմական ծախսերի համար վատնվում են հարյուրավոր միլիարդներ։ Արևմտյան Գերմանիայում իշխում է օտարերկրյա կապիտալը՝ հատկապես ամերիկյանն ու անգլիականը, որոնց ձեռքի տակ են գտնվում 750 ակցիոներական ընկերություններ։ Արևմտյան Գերմանիային սպառնում է տնտեսական կրիզիս։ Այդ է վկայում գործազուրկների հսկայական բանակի առկայությունը և արդյունաբերության շատ դանդաղ աճը։

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 37 ՏԱՐԻՆ

1. *Կոմունիստական պարտիան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի կազմակերպիչ և ոգեշնչող։*

2. *Սովետական ժողովուրդը աշխատանքային նոր հաջողություններով է նշանավորում Մեծ Հոկտեմբերի 37 տարին։*

3. *Աճում և ամրապնդվում է ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։*

4. *Աճում և ամրապնդվում է Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների անխախտ բարեկամությունն ու համագործակցությունը։*

5. *Սովետական ժողովուրդը է՛լ ավելի սերտորեն է համախմբվել հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական Կառավարության շուրջը։*

6. *Ինչ տվեց աշխատավորներին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։*

7. *Մեր երկրում անդադրում կերպով ամրապնդվում*



*է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը։*

8. *Օրըստօրե բարելավվում է Սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։*

9. *Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունները։*

10. *Ռուս ժողովրդի և Սովետական Միության եղբայրական մյուս ժողովուրդների օգնությամբ ծաղկում ու բարգավաճում է Սովետական Հայաստանը։*

11. *Լայնորեն ծավալել նախահոկտեմբերյան սոցմրցությունը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը նոր հաջողություններով նշանավորելու համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Պրոլետարիատի խնդիրները մեր ռևոլյուցիայում, Երկեր, հատոր 24, էջ 51—90, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Ինչ է Սովետական իշխանությունը, Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— *Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. Ստալին.— *Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի միջազգային բնույթը, (Հոկտեմբերի տասնամյակի առթիվ), Երկեր, հատոր 10, էջ 271—287, Հայպետհրատ, 1949։*

*ՀամԿ(բ)Պ պատմություն, Համառոտ դասընթաց, 7-րդ գլուխ, էջ 249—307, Հայպետհրատ, 1946։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին (1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Գ. Մ. Մալենկով.— *Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, Հայպետհրատ, 1953։*

### ԲԱՄԲԱԿԸ ՀԱՎԱՔԵՆՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ

*1. Ծավալենք սոցիալիստական մրցությունը՝ բամբակի հումքը ժամանակին և առանց կորստի հավաքելու համար։*

*2. Բամբակի բերքահավաքի ընթացքում առավելագույն արդյունավետությամբ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան։*

*3. Մեր բրիգադան ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունները։*

*4. Ապահովենք բամբակի մթերակայանների հստակ և անխափան աշխատանքը։*

*5. Բամբակագործների շրջանում լայնորեն արմատավորենք առաջավոր փորձը։*

*6. Հարազատ պետությանը տանք ավելի շատ և ավելի բարձրորակ բամբակի հումք։*



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. Մալենկով.— *Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, էջ 56—72, Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. Խրուշչև.— *ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին։ Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերին։*

*Բամբակացան շրջանների անհետաձգելի խնդիրները, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի սեպտեմբերի 28-ի համարում։*

*Ուժեղ թափ բամբակի բերքահավաքին, «Ս. Հ.»-ի 1954 թվականի հոկտեմբերի 6-ի առաջնորդողը։*

### ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԵՎ ՈՐԱԿԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏԱՐԵԿԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ

*1. Երկրին տանք ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։*

*2. Ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը մեր ձեռնարկությունը։*

*3. Արտադրության մեջ արմատավորենք առաջավոր փորձը և գիտության նվաճումները։*

*4. Աշխատանքային բարձր կարգապահությունը լա-*





վագույն պայման է պլանները հաջողությամբ կատարելու համար։

5. Բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը յուրաքանչյուր արտադրական տեղամասում։

6. Ծավալենք նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը՝ տարեկան արտադրական պլանները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. Մալենկով.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, էջ 43—56, Հայպետհրատ, 1953։

Գ. Մ. Մալենկով.— Ճառ՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, էջ 5—28, Հայպետհրատ, 1953։

Աշխատանքի բարձր արտադրողականության համար, «Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված սեպտեմբերի 23-ի համարում, 1954 թ.։

### ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ՀԱՆՈՒՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ

1. Աճում և ամրապնդվում է Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի և աշխարհի ազատասեր մյուս ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։

2. Սովետական Միության արտաքին քաղաքականությունը ամբողջ աշխարհում խաղաղությունը պահպանելու ու ամրապնդելու և բոլոր երկրների հետ միջազ-



գային համագործակցություն ու գործարար կապեր զարգացնելու քաղաքականություն է։

3. Սովետական Միությունը Ասիայի ժողովուրդների ազգային շահերի մեծ պաշտպանն է։

4. Մերկացված է ամերիկյան կառավարողների ռեակցիոն քաղաքականությունը, ինչպես Եվրոպայի, այնպես էլ Ասիայի ժողովուրդների նկատմամբ։

5. Սովետական Միությունը պայքարում է, որպեսզի ատոմային նյութերը օգտագործվեն միայն խաղաղ նպատակներով։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրության հայտարարությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի սեպտեմբերի 16-ի համարում։

Հանուն խաղաղության և Ասիայի ու ամբողջ աշխարհի ժողովուրդների անվտանգության, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի սեպտեմբերի 17-ի համարում։

Սովետա-ամերիկյան բանակցությունները ատոմային պրոբլեմի վերաբերյալ, «Պրավդա»-ի սեպտեմբերի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի սեպտեմբերի 28-ի համարում։

Հօգուտ խաղաղության և ժողովուրդների անվտանգության շահերի, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հոկտեմբերի 3-ի համարում։

---

**Խմբագիր՝ Գ Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

# ԲԱՑՎԱԾ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
նոյեմբեր—դեկտեմբեր ամիսների
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**2 ամիսը 4 համար— 2 ռուբլի**
**Մեկ համարը — 50 կոպեկ**
**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**


**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 19** **1954 г.**

ՎՖ 12817 Պատվեր 822 Տիրաժ 7820

Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։